Պրոլետարներ բոլոր յերկրների, միացե՛ք.

ՀԿ (բ) Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի
յեվ ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 9 (16)

ՀԿ(բ)ԿԿ հրատարակչություն—«Սով. Հայաստան»
ՅԵՐԵՎԱՆ — 1937

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագիր՝ ԳԻՆՈ ՇԱՂԳԱՄՅԱՆ
Գեղ. խմբագիր՝ Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Սրբ.՝ Մ. Սուրյան և Մ. Գևորգյան
Հրատ. № 12, պատվեր № 5
Գլավլիտի լիազոր Շ— 1249
Տիրաժ 10·500

ՀԿ(բ)Կ ԿԿ հրատ. «Խորհրդ. Հայաստան»-ի տպարան

# «ԶԱՏԻԿԻ» ԾԱԳՈՒՄԸ ՅԵՎ ԴԱՍԱԿԱՐԳԱՅԻՆ ԷՅՈՒԹՅՈՒՆԸ

## ՔՐԻՍՏՈՍԻ ՄԱՍԻՆ ԱՌԱՍՊԵԼԸ

Քրիստոնեական յեկեղեցին հայտարարում է, թե քրիստոնեական կրոնի հիմնադիրն աստծու վորդի Հիսուս—քրիստոսն եր և թե քրիստոնեական «զատիկը» հաստատված է ի հիշատակ նրա հրաշագործ հարության մեռելներից:

Գիտությունը, սակայն, վաղուց արդեն պարզել է, թե վոչ մի Հիսուս քրիստոս յերբեք և վոչ մի տեղ չի յեղել: Դա ստիպված են ընդունել նույնիսկ միքանի բուրժուական գիտնականներ, վորոնք շատ են վախենում աշխատավոր մասսաների մեջ անաստվածության աճումից: Այսպես, որինակ, գերմանական հայտնի բուրժուական պրոֆեսոր Արտուր Դրեվսը կրոնի մասին

կողմնակիցն է, «Առասպել քրիստոսի մասին» գրքում գալիս է այն յեզրակացության, թե վոչ մի քրիստոս չի յեղել: «Ով քրիստոսին անձնավորություն է ընդունում,— գրում է այս պրոֆեսորը, նա պիտի իր հայացքի ոգտին ծանրակշիռ փաստարկներ բերի: Իսկ այսպիսի փաստարկներ յերբեք չի կարելի բերել, վորովհետև գոյություն ունեցող աղբյուրները և փաստաթղթերը դրանց մասին նյութ չեն տալիս»:

Գիտությունը հաստատել է հետևյալը.—

1. Հիսուս-քրիստոսից վոչ մի գրավոր տող, վոչ մի իր, վոչ մի առարկա չի մնացել:

2. Այն ժամանակների վոչ մի պատմաբան, գիտնական և գրող, յերբ, քրիստոնեական զրույցների համաձայն, պետք է, վոր ապրած լիներ Հիսուս-քրիստոսը, վոչ մի խոսք նրա և այն անցքերի մասին չեն տալիս, վոր իբր թե պիտի ուղեկցեյին Հիսուսի կյանքին:

3. Ավետարանները, այն միակ գրքերը, վորոնցում խոսվում է քրիստոսի մասին,— գիտությունը վորպես այնպիսի փաստաթղթեր չի կարող ընդունել, վորոնք հաստատեյին Հիսուս քրիստոսի գոյությու-



նը: Ավետարանները, ինչպես և տարբեր կրոնների բոլոր մյուս այսպես կոչված սուրբ գրքերը՝ հրեաների և քրիստոնյաների հին կտակարանը, մահմեդականների ղուրանը և այլն, զանազան հին առասպելների, զրույցների, ֆանտաստիկ և այլն ժողովածուներ են հանդիսանում:

4. Քրիստոնեության յերևան գալուց շատ առաջ հին Արևելքի շատ հողագործական ժողովուրդներ համարյա նույնպիսի առասպելներ ու զրույցներ են ունեցել աստվածների — փրկիչների մասին, ինչպիսին քրիստոսի մասին առասպելն է: Յեգիպտոսում այսպիսի աստված եր Օզիրիսը, Պարսկաստանում՝ Միթրան, Հնդկաստանում՝ Բուդդան և այլն: Այդ աստվածների պատկերները, վոր պահպանված են մինչև մեր որերը, շատ նման են քրիստոսի պատկերներին:

Այս բոլորը վկայում են այն մասին, վոր ավետարանական պատմվածքները քրիստոսի մասին, նրա ծննդյան, քարոզչական գործունեյության և հրաշագործությունների մասին, մարտիրոսական մահվան ու հրաշալի հարության մասին, վերցված են հին արևելյան ժողովուրդներից: Քրիստո-

նեությունը միայն վերամշակել է աստված-փրկիչների մասին յեղած առասպելները։

Քրիստոնեությունն առաջացել է մոտ 1900 տարի առաջ Հռոմեական ստրկատիրական կայսրության մեջ և սկզբում ճընշված մասսաների, ստրուկների, ազատ արձակվածների, չքավորների և իրավազուրկների, Հռոմի կողմից նվաճված ու ճնշված ժողովուրդների կրոն եր։ Այս բոլոր ճնշված մասսաներն անզոր եյին իրենց վրայից ստրկացնողների և շահագործողների լուծը թոթափել։ Նրանք շատ անգամ ապստամբություններ եյին բարձրացնում, բայց այս ապստամբությունները վերջանում եյին անհաջողությամբ, Հռոմեյական հզոր համաշխարհային պետությունը ստրուկների և առանձին ժողովուրդների ամեն տեսակի դիմադրություններն անհուսալի եյին։ Ստրկացված, հալածված ու անանկացած մասսաների այս անզորությունը նրանց մեջ հրաշագործ փրկչի, «մեսիայի» հավատ եր առաջ բերում։ Այս փրկիչը, «մեսիան» պետք է յերևար աշխարհին և ազատեր բոլոր «վաստակյալներին ու բեռնավորներին»։



Ստրուկները և աղքատները մոլեգնորեն սպասում եյին հրաշագործ փրկչին, բայց նա չեր գալիս, չեր յերևում։ Այդ ժամանակ սկսեցին մտածել, թե «մեսիան» արդեն յեկել է, քարոզել է իր ուսմունքը, բայց նրան բռնել ու մահվան են դատապարտել հռոմեացիք, ինչպես դա անում եյին նրանք բոլոր նրանց վերաբերմամբ, վորոնք դեմ եյին գնում նրանց իշխանությանը։ «Մեսիայի» մասին այս լեգենդները թշվառացած ու ճնշված մասսաների գիտակցության մեջ հյուսվեցին հին արևելյան կրոնների այն զրույցների հետ, վորոնք հնարված եյին չարչարված, մեռած և հարություն առած աստված-փրկիչների շուրջը։ Սկսեցին հավատալ, վոր հռոմեացիների կողմից մահվան դատապարտված «մեսիան» հարություն է առել, համբարձվել է յերկինք, բայց շուտով դարձյալ կերևա յերկրին, կդատի կենդանիներին ու մեռածներին և բոլոր «վաստակյալներին ու բեռնավորներին» հավիտենական յերանություն կտա յերկնքում։

Խորհուրդների Համամիութենական 2-րդ համագումարում ընկ. Ստալինն իր ճառում պատկերավոր վառ կերպով ցույց ար-

վեց, թե ինչու դարերի ընթացքում ճնշվածները հավատում եյին աստծուն, սպասում եյին յերկնային հավիտենական յերանության:

Ընկեր Ստալինն ասաց.—

«Ստրուկներ ու ստրկատերեր, ճորտեր ու ճորտատերեր, գյուղացիներ և կալվածատերեր, բանվորներ և կապիտալիստներ, ճնշվածներ և ճնշողներ,— այսպես եր կառուցվում աշխարհը դարերից ի վեր, այսպիսին ե մնում նա այժմ էլ յերկրների հսկայական մեծամասնության մեջ: Տասնյակ ու հարյուրավոր անգամ դարերի ընթացքում աշխատավորները փորձեցին թոթափել իրենց ուսերից ճնշողներին և իրենց դրության տերը դառնալ: Բայց ամեն անգամ, ջարդված ու խայտառակված, նրանք ստիպված եյին նահանջել, իրենց հոգում վիրավորանք ու ստորացում, անելություն ու հուսահատություն թաքցնելով և հայացքներն անհայտ յերկինք ուղղելով, վորտեղ նրանք հույս ունեյին փրկություն գտնել»*):

Նույնը տեղի ունեցավ նաև հռոմեական

*) Сталин, «О Ленине», стр. 16, Партиздат, 1934 г.



ստրուկների և չքավորների հետ: Ճնշված ու ազատազուրկ աշխատավորները, վորոնք ծանր ու տանջալից վիճակից յելք չեյին տեսնում, սկսեցին հավատալ խաբուսիկ կրոնական յելքին:

«Մարմնի մահվանից հետո հոգու հետագա գոյությունը, գրում ե Ֆրիդրիխ Ենգելսը «Նախնական քրիստոնեության պատմության շուրջը» իր աշխատության մեջ,— կամաց-կամաց հավատի բոլորի կողմից ընդունված հանգամանք դարձավ հռոմեական աշխարհում: Ճիշտ նույնպես էլ ավելի ու ավելի տարածվեց այն հավատը, թե մեռածների հոգիներին վարձատրություն կամ պատիժ ե սպասում այն բոլորի համար, ինչ նրանք գործել են յերկրի վրա... Յեվ ահա հայտնվեց քրիստոնեությունը, լուրջ վերաբերվեց հանդերձյալ աշխարհում սպասելիք վարձատրության ու պատժին, ստեղծեց յերկինք ու դրախտ և այսպիսով գտնվեց այն յելքը, վորը ճնշվածներին ու բռնավորներին հանում եր այս յերկրային աշխարհից և հավիտենական դրախտ եր տանում»:

Քրիստոնեական կրոնն հենց իր սկզբից շատ ձեռնտու դուրս յեկավ շահագործող

դասակարգերի համար: Նա ճնշվածներին կռվի կոչ չէր անում ընդդեմ ճնշողների այլ համբերություն ու հնազանդություն հորդոր էր անում, դրա համար «հավիտենական կյանք» խոստանալով յերկնքում· Քրիստոնեական քարոզիչներն ուսուցանում եյին, թե քրիստոսի թագավորությունն «այս աշխարհից չի», թե քրիստոսը հրամայել է բոլորին յենթարկվել իշխանության, իսկ ստրուկներին՝ հնազանդվել իրենց տերերին: Այս տերերին քրիստոնեական յեկեղեցին կանչում էր իր համայնքների մեջ, հայտարարելով, թե ամեն վոք ով կհավատա քրիստոսին և կօգնի համայնքին,—լինի դա թեկուզ ամենաանողոք և հանցագործ ստրկատեր,— միևնույն է կընկնի յերկնային թագավորության մեջ:

Քրիստոնեական կրոնին շատ լավ է հարմարում Վ. Ի. Լենինի հետևյալ խոսքերը·

«Նրան, ով ամբողջ կյանքում աշխատում է և կարիքի մեջ է, կրոնը հնազանդություն ու համբերություն է ուսուցանում յերկրավոր կյանքում, մխիթարելով յերկնային վարձատրության հույսով: Իսկ նրանց, ովքեր ապրում են ուրիշի աշխատանքով, կրոնը բարեգործություն է քարոզում յերկրա-



վոր կյանքում, նրանց ամբողջ շահագործական գոյության համար շատ եժան արդարացում առաջարկելով և ձեռնտու գնով յերկնային բարեկեցության տոմսեր ծախելով»*):

Տեսնելով և հասկանալով այս բոլորը, հռոմեական հարուստները սկսեցին մտնել քրիստոնեական համայնքների մեջ և օգնել նրանց: 4-րդ դարի սկզբին Կոնստանտինոս կայսրը քրիստոնեական կրոնը տիրապետող հայտարարեց հռոմեական կայսրության մեջ, իսկ տերտերները նրան «քրիստոսի օծյալ» և քրիստոնեական յեկեղեցու գլուխ հռչակեցին: Շահագործող դասակարգերի և քրիստոնեական կրոնի միջև սերտ դաշինք հաստատվեց, վոր ուղղված էր հարուստների իշխանության և գույքի պահպանման և աշխատավորների միլիոնավոր մասսաների ճնշմանն ու ստրկացմանը:

## Ի՞ՆՉՊԵՍ ԱՌԱՋԱՑԱՎ «ԶԱՏԻԿԸ»

«Զատիկը» տոնը ինչպես և քրիստոսի մասին ավետարանական առասպելները,

*) Լենին. հատոր 8, եջ 419, 3-րդ հրատարակություն:

քրիստոնեությունը փոխ է առել հին արևելյան ժողովուրդներից, վորոնց մոտ լայն տարածված եյին արևի և բուսականության՝ տանջված, մեռած ու հարություն առած՝ աստծու տոները:

Արևի աստծուն հին հողագործները վերագրում եյին տարվա յեղանակների հերթափոխությունը, բուսականության աճումըն ու թառամումը: Արևի աստվածը նաև փրկարար-աստված եր համարվում: Նրան եյին մարդիկ դիմում վոչ միայն տաքության ու բերքի խնդիրներով, այլև այն խնդրով, վոր նա ազատի, փրկի իրենց աղքատությունից ու ստրկությունից:

Արևի աստվածը տարբեր ժողովուրդների մոտ տարբեր անուն եր կրում: Բայց թե բոլոր այդ ժողովուրդներն արևի աստծուն պատկերացնում եյին վորպես գերբնական եակ ու հերոս, վորը ծնվում, տանջվում, մեռնում և հարություն է առնում: Բոլոր հին արևելյան հողագործական ժողովուրդներն ամեն տարի տոնում եյին արևի աստծու ծնունդը, մահը և հարությունը:

Արևի աստծու ծնունդը տոնվում եր ձմեռային արևադարձի որերին—դեկտեմ-



բերի վերջին և հունվարի սկզբին: Այդ ժամանակ արեգակը վորպես թե նորից է ծընվում, սկսում է ավելի ու ավելի բարձրանալ, որը յերկարում է, իսկ գիշերը՝ կարճանում:

Արևի աստծու մահն ու հարությունը տոնվում եյին գարնանային որահավասարման ժամանակ, յերբ որն իր տևողությամբ հասնում է գիշերվան տևողության, գարնանն ամբողջ բնությունը կյանք է առնում, իսկ դրա հետ միասին մտածում եյին հին հողագործները, հարություն է առնում նաև արևի աստվածը:

Յեգիպտոսի հին հողագործներն արևի և բուսականության աստված եյին համարում Ոզիրիսին: Ըստ յեգիպտական քուրմերի ուսմունքի, Ոզիրիսը աշխարհում ապրեց 30 տարի, մարդկանց հողագործություն սովորեցրեց և սիրո ու բարոյական կանոնների պատվիրաններ տվեց: Չար ուժերը մեռցրին Ոզիրիսին, բայց նա հարություն առավ, համբարձվեց յերկինք ու այնտեղ դատում է մեղավորներին ու արդարներին:

Գարնանային դաշտային աշխատանքներն

սկսվելուց առաջ, հին յեգիպտացիք Ոզիրիս աստծու տանջանքների, մահվան և հարության յերկարատեվ տոն եյին կատարում: Տոնից առաջ յեգիպտացիք լալիս, աղոթում ու պաս եյին պահում: Տոնի առաջին որը տեղի յեր ունենում Ոզիրիսի անդրիի թաղումը, իսկ մի որ անց հանդիսավորությամբ և ուրախությամբ տոնվում եր նրա հարությունը: Հարություն առած Ոզիրիսը, մտածում եյին հին յեգիպտացիք, գարնանային ջերմությամբ զարթեցնում ե խորը քնած հողին:

Հին յեգիպտացիք, վոր չգիտեյին բնության որենքները և շատ թույլ տեխնիկա ունեյին, փորձում եյին իրենց զոհաբերություններով և զանազան կախարդական ծեսերով ազդել բնության վրա և աղոթքներով աստվածներից լավ բերք կորզել: Այս բոլորը չեր ոգնում, այլ ընդհակառակը, խանգարում եր մարդուն բնության մեջ հաջող պայքար մղելու գործին:

Հին պարսիկները, ճիշտ նույնպես, ինչպես և յեգիպտացիք, կատարում եյին մեռնող և հարություն առնող աստծու տոնը: Պարսիկների այս աստվածը Միթրան եր: Ամեն տարի, 40 որ շարունակ, վոր



նախորդում եյին գարնանային որահավասարման, քուրմերը զոհաբերություններ եյին անում և հոգեհանգստյան ծեսեր եյին կատարում, իսկ հետո վերջին գիշերը, հանդիսավոր կերպով հայտարարում եյին Միթրայի հարության մասին:

Մեռնող ու հարություն առնող աստվածների նույնպիսի տոներ ունեյին նաև շատ հին արևելյան ժողովուրդներ—փյունիկեցիների մոտ՝ Ադոնիս աստծու պատվին, փռյուգացիների մոտ՝ Ատտիսայի և այլն:

Ահա հին արևելյան այս կրոնական տոները հենց կազմեցին քրիստոնեական «զատիկի» հիմքը: Իրենց տոնի անունը քրիստոնյաները հրեաներից ժառանգեցին: «Զատիկ» խոսքը յեբրայեցերեն «վողորմածություն շարժել» ե նշանակում: Հրեական «զատիկը» սկիզբ ե առնում այն ժամանակներից, յերբ հրեաները, թափառական խաշնարածներ լինելով, ջանում եյին գարնանը, անասունի ծնի ժամանակը, շարժել չար վոգիների վողորմածությունը: Դրա համար թափառականները վոգիներին գառ եյին զոհաբերում: Յերբ հրեաները խաշնարածությունից հողագործության անցան, այս գարնանային անասնապահական տոնը մի-

րածվեց գարնանային հողագործական տոնի: Հրեաստանը հռոմեացիների լուծի տակ ընկնելուց հետո, գարնանային այս կրոնական տոնը դարձավ «մեսիային» սպասելու տոն:

Շատ հրեաներ կային, վորոնք իրենց հայրենիքից (Պաղեստինից) դուրս եյին ապրում, հռոմեական պետության զանազան քաղաքներում և յերկրներում: Վոմանց այնտեղ եր շպրտել գերությունը, մյուսներն իրենց հայրենիքից փախել եյին, խույս տալով իրենց դաժան ստրկացնողների հետապնդումներից, վոմանք ել դուրս եյին յեկել իրենց յերկրից վաստակ փնտռելու և այլն: Հենց այս հրեաների մեջ ել առաջին անգամ ստեղծվեցին քրիստոնեական կրոնի հիմունքները: Այս հրեաները, հայրենիքից կտրված լինելով և տարբեր ազգությունների ճնշված մասսաների մեջ ապրելով «մեսիային» վոչ թե ազգային հերոս և միայն Հրեաստանի փրկիչ, այլ բոլոր ազգությունների մարդկանց փրկիչ եյին պատկերացնում:

Քրիստոնեական առաջին համայնքներում հրեաների հետ կային նաև այլ ազգությունների պատկանողներ: Հրեաները,



քրիստոնեական համայնքները մտնելով, շարունակում եյին տոնել հրեական «պասեքը», իսկ այլ ազգությունների մարդիկ՝ սպանված-փրկիչի տանջանքների, մահվան ու հարության իրենց գարնանային կրոնական տոները: Հետագայում քրիստոնեական յեկեղեցին այս տոներն ի մի ձուլեց, դարձրեց քրիստոնեական «պասեքի» տոն, դրա միջից դուրս ձգելով հրեական բովանդակությունը և այս տոնը կապելով հիսուս-քրիստոսի հարության առասպելի հետ:

Յերբ քրիստոնեությունը յերևաց հին Ռուսիայում, ապա քրիստոնեական յեկեղեցու կողմից ձևափոխված այս հին արևելյան տոնն իր մեջ հին սլավոնների շատ սովորույթներ ներծծեց:

Մեր հեռավոր նախնիք— վայրենիները չեյին կարողանում ճիշտ բացատրել շրջապատող յերևույթները: Նրանք անզոր եյին բնության ահեղ ուժերի հանդեպ, նրանց վրա ծանրանում ե նաև հասարակական հարաբերությունների լուծը, վայրենական համայնքի վողորմելի ու խղճուկ կյանքը: Վայրենիների այս անզորությունը նրանց մեջ առաջացրեց հավատ դեպի աստվածնե-

րը, ատամնաները, հրաշքները, սակայն նրանց հավատալ խորհրդավոր վոգիների գոյության, վորոնք իշխում եյին բնության և հասարակության վրա: Այսպիսի աստվածներ վայրենիները համարում եյին մեռած նախնիքների հոգիները:

Գարնանը, յերբ տաքն ընկնում եր, դալիս եյին թռչունները և սկսում եր կանաչ յերեվալ, հին սլավոնները մեծ տոն եյին սարքում ի պատիվ նախնիների-հոգիների: Այս տոնի հետքերը դեռ մինչև այժմ ել կան գյուղի սովորույթներում ու ծեսերում: «Զատիկին» որինակ, ընդունված է պատրաստել տվարոգի «պասխա» ու ձուներկել: Տվարոգը (ժաժիկը) և ձուն հին սլավոնների գարնանային տոնական կերակուրն եր, վոր նրանք զոհ եյին բերում աստվածներին: Ձվերը կարմիր գույնի ներկելը իր սկիզբն է առնում այն ժամանակներից, յերբ հները ձվի վրա արյուն եյին քսում, վորպեսզի դրանք ավելի համեղ դառնան նախնիների- հոգիների համար:

«Զատիկից» առաջ ընդունված է ուռենի որհնել: Տերտերներն ասում են, թե ուռենին փոխարինում է այն արմավենու ճյուղերին, վորոնցով իբր յերբեմն վողջունում



եյին հիսուս-քրիստոսին հրեաները, յերբ նա Յերուսաղեմ եր մտնում: Իբր ի հիշատակ դրան ել հաստատված է ուռենի որհնելու սովորությունը: Այն ինչ իրականում դա հին կախարդական ծեսի մնացորդն է, յերբ ուռենին «սուրբ» ծառ եյին համարում (նրա մեջ իբր ապրում եր նախնիների հոգիները) և նրան չար վոգիները, դևերը քշելու մոգական (կախարդական) ուժ եյին վերագրում:

Այսպիսով տեսնում ենք, վոր «զատիկի» տոնն իր արմատներով հեռավոր անցյալի մեջ է մտնում: Սկզբում դա վայրենիների տոնն եր ի պատիվ նախնիների հոգիների, ապա հին-արևելյան հողագործական ժողովուրդների մոտ դա դարձավ արևի աստծու և աստված-փրկչի տանջանքների, մահվան ու հարության տոնը: Քրիստոնեական կրոնի մեջ այս տոնը ամբողջովին վերածվեց ծեծկված ու ազատազուրկ մշակների տոնի, ստրուկների տոնի, վորոնք չեն վստահում իրենց սեփական ուժերին և փրկություն ու ազատություն են սպասում գոյություն չունեցող հանդերձյալ կյանքում: «Զատիկի» տոնն անցյալի ծանր ժառանգություն, ստրկության մնացորդ է հանդիսանում:

## «ԶԱՏԻԿԻ» ԴԱՍԱԿԱՐԳԱՅԻՆ ԷՅՈՒԹՅՈՒՆԸ

Ստրկատիրական հասարակությունը, վորի մեջ ծագեց քրիստոնեությունը, փոխարինվեց ճորտատիրականով, իսկ այս վերջինս իր տեղը զիջեց կապիտալիստական հասարակակարգին։ Աշխատավորները շարունակում եյին իրավազուրկ ու շահագործվող մշակներ մնալ։ Նրանք անզոր եյին իրենց ուսերից ճնշողներին թոթափել, ազատել իրենց ստրկության շղթաներից ու ստորացումից և դրա համար էլ շարունակում եյին հավատալ քրիստոս-փրկչին ու կատարել վայրենական ու ստրկական կրոնական տոներ։ Իսկ տիրող շահագործող դասակարգերն ամբողջ ուժով աշխատում եյին ամրապնդել այս տոները, վորովհետև դրանք աշխատավորներին ճնշելու գործում հզոր զենքեր եյին ծառայում։

«Զատիկը»— դա «տոների տոնը և հանդեսների հանդեսն է» հայտարարում են քրիստոնեական տերտերները։

«Զատիկը»— դա տերտերական ուժեղացված ագիտացիայի և պրոպագանդայի,



աշխատավորների գլուխները կրոնական մշակման յենթարկելու մոմենտն է։

Քրիստոնեական «զատիկի» նպատակը նախ և առաջ աշխատավոր մասսաներին օրինակ տալը, նրանց իդեալական (հոգուտ շահագործողների) վարքի օրինակ տալու մեջ է։

Քրիստոսի տանջանքների զրույցն այս նպատակին շատ լավ է հարմարում։ Այս զրույցը պրոպագանդա անելուն տերտերները մի ամբողջ շաբաթ, այսպես կոչված «չարչարանաց յոթնորյակ» են հատկացրել։ Այս օրերին քրիստոնեական բոլոր տաճարներում և աղոթատներում հավատացյալի սիրտը կտրատող տանջանքների ու մտացածին աստված-փրկչին մահվան տեսարաններ են խաղացվում, կարդացվում են «տիրոջ չարչարանքները» (հիսուս-քրիստոսի տանջանքների մասին ավետարանական զրույցներ), ցուցադրվում է վարշամակը-արյունաթաթախ ու խաչված աստծու պատկերը։ Գիշերը, ջահերի լույսի տակ այս վարշամակը թաղում են, համբուրում են այն, լաց են լինում նրա վրա։ Աշխատավորներին ներշնչվում է այդ օրերին, թե նրա տանջանքները վոչինչ են իր իսկ աստ-

ծու չարչարանքների ու տանջանքների համեմատությամբ, վորը կամովին ընդառաջեց այս բոլոր տանջանքներին, չհակառակեց չարին և դրանով հենց հաղթահարեց չարին, մարդկանց ազատեց մեղքերից: Այստեղից բղխում է հետևյալ մորալը:
—Աշխատավորները պարտավոր են հնազանդությամբ կրել իրենց չարչարանքները, վորոնք անհամեմատ ավելի մեղմ են քան քրիստոսի տանջանքները, նրանք պետք է չհակառակեն չարին, վորովհետև միայն տանջանքների միջոցով (այն էլ կամավոր) կարելի յե փրկել իրեն, վարձատրության արժանանալ յերկնքում:

Աշխատավոր հավատացյալները «տիրոջ չարչարանաց» ուժեղ տպավորության տակ գտնվելով, իրենց մեջ ներծծում են, ինչպես սպունգը ջուրը, այս շահագործողներին միայն ձեռնտու մորալը: «Տիրոջ չարչարանաց» հավատի միջոցով մարդ կորցնում է իր իսկական մարդկային պատկերը, նրան հարկադրում են որհնել իր ստրկությունն ու չքավորությունը, նրան հարկադրում են ծունկի դալ այն բանի առաջ, ինչ նրան կորստի յե մատնում ու խեղաթյուրում է, ստորացնում ու ճնշում է



մարդկային կյանքը:

Քրիստոնեական «զատիկի» նպատակն այնուհետև կայանում է քրիստոսի հարության հավատն ամրապնդելու մեջ: Նրա նպատակն է աշխատավոր մասսաներին ապագայում վորպես թե յերկնքում սպասող յերանության օրինակը տալ, նրանց մի քանի ժամվա դադար տալ իրենց տաժանակիր կյանքի նեղություններից և թուլացնել այն դասակարգային պայքարը, վոր կուտակվել է նրանց մեջ ընդդեմ շահագործողների: Այս նպատակին է ծառայում տանջված— աստծու հարության դրույթը· «քրիստոսի սուրբ հարության» օրը:

«Ցնծացե՛ք, քրիստոնյաներ, ասում են տերտերները, քրիստոս հարություն առավ, մահվամբ զմահ կոխյաց: Քրիստոս հաղթեց չարին, բոլոր մարդիկ այժմ յեղբայրներ դարձան, յեկավ ընդհանուր հաշտեցումը: Վողջունեք, համբուրվեցեք հանուն քրիստոսի»: Եվ այս բոլորը հաստատելու համար խելոք տերն ինքն է գնում իր բանվորների մոտ քրիստոսահամբուրվելու համար:

Զատկական կրոնական խնջակերությունն ուղեկցվում եր հարբեցողությամբ, վորով աշխատավորները ձգտում եյին մո-

տանել իրենց ազատազուրկ ու իրավազուրկ կյանքի բոլոր ծանրությունները: Այսպես էին կրոնն ու ոգին ամրապնդում շահագործողների իշխանությունը խավար ու ծեծկված աշխատավորների վրա:

Աշխատավորների դասակարգային պայքարը ընդդեմ շահագործողների— կրոնը ձգտում էր վոչնչացնել վոչ միայն դասակարգային հաշտեցման քարոզով, այլև այս դասակարգային պայքարը ազգային յերկպառակության ռելսերը փոխանցելով: Ցարական Ռուսաստանում հենց «զատիկլին» կապիտալիստները, կալվածատերերը և կուլակները խավար, հետամնաց մասսաների մեջ ուժգին կերպով բորբոքում էին վայրի անտիսեմիտիզմը. այս նպատակով հրեաների ձեռքով քրիստոսին խաչելու նողկալի առասպելն ոգտագործելով: Դա արվում էր այն պատճառով, վոր աշխատավորներից թաքցվի իրենց ծանր վիճակի իսկական պատճառը և թույլ չտրվի վոր տարբեր ազգություններին պատկանող աշխատավորները համախմբվեն ընդդեմ իրենց իսկական թշնամիների, ընդդեմ շահագործողների:

Քրիստոնեական «զատիկը» տոնը սրբագործում և օրհնում է հին, շահագործական



աշխարհի բոլոր զազրելիությունները, նրա բոլոր զարշելիություններն ու հանցանքներն ընդդեմ աշխատավորների:

Քրիստոնեական «զատիկը» տոնը հին, արյունախում աշխարհի տոնն է, նրա զենքն է, վոր ծառայում է շահագործական կարգերի պաշտպանմանն ու պահպանմանը:

## ՅԵԿԵՂԵՑԻՆ՝ ՖԱՇԻԶՄԻՆ ՍՊԱՍԱՎՈՐ

Հանձինս քրիստոնեական կրոնի և յեկեղեցու ստրկատերերը, ճորտատերերը, կալվածատերերը և կապիտալիստները միշտ էլ ունեցել են մի այնպիսի զենք, վորը ծառայում է շահագործման պաշտպանության և աշխատավորներին բթացնելուն:

«Քրիստոնեության սոցիալական սկզբունքները,— գրում էր Կարլ Մարքսը,— արդարացնում էին անտիկ ստրկությունը, փառաբանում էին միջնադարյան ճորտատիրությունը և կարողանում էին նույնպես, կարիք յեղած դեպքում, թեև վողորմելի ծամածռություններով, պաշտպանել նաև պրոլետարիատի ժամանակակից ճնշվածությունը:

Քրիստոնեության սոցիալական սկզբունքները քարոզում են դասակարգերի գոյու-

թյան անհրաժեշտությունը՝ տիրապետող և ստրկացված, և վերջինիս համար նրանք միայն բարեպաշտ ցանկություն են հայտնում, որ առաջինը նրան բարեգործություն անի:

Քրիստոնեության սոցիալական սկզբունքները յերկինք են տեղափոխում յերկրի վրա կրած բոլոր զզվելիությունների համար կոնսիստորիական խորհրդականի կողմից խոստացված վարձատրությունը և դրանով հենց արդարացնում են այս զզվելիությունների շարունակումը յերկրում:

Քրիստոնեության սոցիալական սկզբունքները ճնշողների բոլոր զարշելիությունները ընդդեմ ճնշվողների, փառաբանում են կամ որպես արդարացի պատիժ նախնական և այլ մեղքերի համար, կամ ել որպես փորձություն, որ տերն իր գերիմաստությամբ հղում է իրենով փրկագնված մարդկանց:

Քրիստոնեության սոցիալական սկզբունքները փառաբանում են յերկչոտությունը, ինքն իրեն արհամարհելը, ինքնաստորացումը, յենթարկումը, հնազանդումը, մի խոսքով ամբոխի բոլոր հատկությունները: Բայց պրոլետարիատի համար, որը չի ցանկանում, որ իր հետ վարվեն որպես



մարդկության տականքի հետ, պրոլետարիատի համար համարձակությունը, ինքնագիտակցությունը, հպարտության ու անկախության զգացումը հացից ավելի կարևոր են:

Քրիստոնեության սոցիալական սկզբունքների վրա դրված է նենգության և կեղծ բարեպաշտության կնիքը, իսկ պրոլետարիատը հեղափոխական է»*):

Մեր ժամանակներում քրիստոնեությունը մեռնող կապիտալիզմի հավատարիմ պաշտպանի դեր է խաղում: Քրիստոնեական յեկեղեցին միջազգային հեղափոխական շարժման չարագույն թշնամին է, միասնական ժողովրդական ճակատի չարագույն թշնամին է: Իսկ այս ճակատին մասնակցում են նաև հավատացյալ աշխատավորները: Յեկեղեցին կապիտալի հավատարիմ թիկունքն է: Նա ֆաշիստական ռեակցիայի առաջին շարքերում է գտնվում, նա խոսքով ու գործով օգնում է հեղափոխական շարժումը խեղդելուն:

«Հռոմեական պապը և «սրբազնագույն»

---

*) Կ. Մարքս և Ֆ. Ենգելս. Հատոր 5, եջ 173—174, Պետհրատ, 1929 թ.:

յեպիսկոպոսները տարբեր յերկրներում,— ասում է ընկ. Դիմիտրովը,—պարտականություն են համարում հանդես գալ թղթերով ու յեկեղեցական քարոզներով, վորպեսզի իրենց հոտը պաշտպանեն «ահեղ բոլշևիկյան վտանգից» ժողովրդական ճակատից»*):

Գերմանիայում քրիստոնեական տերտերները, ինչպես կաթոլիկ, նույնպես և բողոքական, հիացմունքով վողջունեցին Հիտլերի իշխանության գլուխ անցնելը: 1933 թ. հուլիսին հռոմեական պապը գերմանական ֆաշիզմի հետ կոնկորդատ (դաշնագիր) կնքեց, ըստ վորի կաթոլիկ յեկեղեցին մեծ իրավունքներ և առավելություններ ստացավ: 1934 թվի ոգոստոսին բողոքական կայսերական յեպիսկոպոս Մյուլլերը կոչ եր անում ձայն տալ հոգուտ Հիտլերին նախագահի լիազորություններով ոժտելուն:

Գերմանական ֆաշիզմի և քրիստոնեական յեկեղեցու միջև յերբեմն վորոշ ընդհարումներ ու տարաձայնություններ են առաջ գալիս: Այս տարաձայնությունները, վոր առաջ է գալիս աշխատավոր հավատացյալ-

*) «Պրավդա» 1936 թ. 7 նոյեմբերի:



ների ֆաշիստական ռեժիմից դժգոհության աճումից, այն մասին վեճի բնույթ են կրում, թե ինչ մեթոդներով պետք է մասսաներին հետ պահել հեղափոխական յելույթներից և կորստից ազատել կապիտալիստական հասարակարգը: Իսկ վերջինս հավասարապես թանկ է ինչպես ֆաշիզմի, նույնպես և յեկեղեցական իշխանների համար: Գերմանական ֆաշիզմը և քրիստոնեական յեկեղեցին թշնամիներ չեն, այլ բարեկամներ, վորոնց միջև ժամանակավոր վեճեր են ծագում: Յեվ իզուր չէ 1936 թ. Գերմանիայի կաթոլիկական յեկեղեցու իշխանները Ֆուլդեյում գումարված կոնֆերենցիայում հայտարարեցին իրենց լրիվ անվերապահ աջակցության մասին Հիտլերին, հատուկ կոչ ուղղելով հավատացյալներին: Այս կոչի մեջ կաթոլիկ յեպիսկոպոսները հորդորում եյին հավատացյալներին, համախմբվել և պաշտպան կանգնել ֆաշիստական հայրենիքին, վորին իբր թե, արևելքից ու արևմուտքից «բոլշևիկյան վտանգ» է սպառնում:

Քրիստոնեական յեկեղեցին ել ավելի մեծ ոգնություն է ցույց տալիս ֆաշիզմին Իտալիայում և Իսպանիայում:

Երբ իտալական իմպերիալիզմը հարձակվեց անպաշտպան Հաբեշստանի վրա, տերտերները հանդիսավոր մաղթանքներ արին իտալական զորքերի հաղթանակի համար: Երբ ֆաշիստական բռնակալները հարյուր հազարավոր անպաշտպան և կիսապաշտպան եյակներին արյունաշաղախ արին, խեղդող գազերով այլանդակեցին ու խեղդեցին հազարավոր մարդկանց, ոդանավերից քար ու քանդ արին հարյուրավոր հաբեշական գյուղեր և գրավեցին Ադդիս-Աբեբան, Հռոմի պապը հանդիսավոր ճառ արտասանեց, վորում իտալական ֆաշիզմի հաղթանակը «մեծ և բարի ժողովրդի հաղթական բախտ» անվանեց:

Իսպանիայում համարյա ամենուրեք քրիստոնեական հոգեվորականությունը մասնակցեց ֆաշիստական խռովության, ընդդեմ հանրապետական կառավարության: Տերտերները գիտեյին պատրաստվող խռովության մասին և միջոցներ ձեռք եյին առնում ֆաշիստներին ոգնություն ցույց տալու համար: Տանժերի իսպանական արքեպիսկոպոսը խռովարարներին 500 հազար պեսետ տվեց: Հաենա քաղաքի յեպիսկոպոսի մոտ, վոր փորձում եր ազնվականների



մոտ փախչել, 8 միլիոն պեսետ գտնվեց, վորը հատկացված եր գեներալական խռովությունը ֆինանսավորելու համար: Շատ յեկեղեցիներում զենքի պահեստներ հայտաբերվեցին: Երբ բռնկվեց խռովությունը, իսպանական տերտերները մաղթանքներ կատարեցին և որհնում եյին ֆաշիստական բանդիտներին: Բուրգոսի արքեպիսկոպոսը քաղաքի գլխավոր հրապարակում որհնում եր ֆաշիստական ջոկատներին հանրապետականների դեմ նրանց ուղարկելուց առաջ: Դեպի կոմունիզմը գազանային ատելությամբ լցված տերտերները մտնում եյին ֆաշիստական կուսակցությունների մեջ, իսկ յերբեմն նույնիսկ ֆաշիստական խռովարարների և ջարդարարների ջոկատների մեջ, խաչը հրացանի հետ փոխելով և յեկեղեցիները հեղափոխական զորքերին ռմբակոծելու կետեր դարձնելով: «Դիարիո դե Նավարրա» թերթում ֆաշիստները հիացմունքով հաղորդում եյին, թե Նավարրայի (իսպանական պրովինց) քահանաներն ուղեկցում են սպիտակ ջոկատներին վոչ միայն խաչվառներով, այլև հրացաններով: Թերթն առանձնապես գովաբանում եր մի տերտերի հերոսությունը, վորը սպի-

տակներին տարել էր իր գյուղը և այնտեղ նրանց ձեռքն էր տվել ժողովրդական ճակատի 19 կողմնակիցների: Այսպես է գործում այժմ տերտերների մեծամասնությունը Իսպանիայում:

Քրիստոնեական յեկեղեցին հատուկ ուշադրություն է դարձնում սոցիալիզմի մեծ յերկրի դեմ՝ ԽՍՀՄ դեմ պայքարելու վրա: 1930 թ. Հռոմեական պապը փորձեց անգամ «խաչակրաց արշավանք» կազմակերպել մեր դեմ: «Սուրբ հոր» այս փորձը տապալվեց, բայց Հռոմեական պապը և նրա «Օսսերվատորե Ռոմանո» թերթը մինչև այժմ չեն դադարում գրպարտությունների հեղեղ թափել մեր մեծ հայրենիքի, միջազգային պրոլետարիատի այս հույսի ու հպարտության գլխին, խաղաղության բարեկամների այդ հզորագույն հենարանի և իմպերիալիստական պատերազմի հրձիգների ուժը սանձահարողի գլխին:

Քրիստոնեական հոգևորականությունից իրենց հակահեղափոխական գործունեությամբ հետ չեն մնում նաև այլ կրոնների տերտերները: Հրեական ավագ ռաբբին Ծրիդմանը, իտալական իմպերիալիզմը Հաբեշստանի վրա հարձակվելիս, կոչ արեց



իտալական հրեաներին, վորի մեջ գրում էր. «Հաբեշցիք պետք է լայն բաց անեն իրենց գիրկը և մեծագույն ուրախությամբ ընդունեն Մուսսոլինիի լուսաճաճանչ, աստվածային պատկերը»: Ցերուսաղեմի մուսուլմանական խորհուրդը պարտավորեցրեց հավատացյալներին չաջակցել Հաբեշստանին, վորովհետև իբր թե Մուսսոլինին իսլամի հովանավորողն է հանդիսանում: Հրեական ու մուսուլմանական հոգևորականները ճիշտ նույնպես, ինչպես և քրիստոնեական հոգևորականությունը, զազիր հեքիաթներ են տարածում հանրապետական Իսպանիայում կրոնի դեմ հալածանքի մասին:

Այս է ժամանակակից համաշխարհային յեկեղեցու դեմքը:

«Զատիկի» որերին քրիստոնեական տերտերները,«աստծու հնազանդ սպասավորներ» ձևվանալով, հավատացյալ աշխատավորներին ուժեղ կերպով դասակարգային խաղաղության կոչ կանեն, «ընդհանուր ներում» կքարոզեն՝ «մերձավորին սիրելու դիմակի» տակ մտած և հանուն գոյություն չունեցող հանդերձյալ կյանքի: Այս քարոզների նպատակը և դերն այն է, վոր հավա-

տացյալ աշխատավորներին կտրեն հանուն յերկրային լավագույն կյանքի մղվող հեղափոխական պայքարից:

Կրոնի դիմակի տակ, հեզ և սիրասուն քրիստոսի դիմակի տակն են թաղնվում կապիտալի և ֆաշիզմի դաշնակիցները, բանվորների և գյուղացիների ամենազազրելի թշնամիները:

## ԿՐՈՆԸ ԺՈՂՈՎՐԴԻ ԹՇՆԱՄԻՆ Ե

Ամերիկյան առաջին բանվորական պատվիրակության հետ զրուցելիս ընկեր Ստալինն ասաց.

«Մենք պրոպագանդա յենք մղում ու պրոպագանդա յենք մղելու կրոնական նախապաշարմունքների դեմ: Յերկրի օրենսդրությունն այնպես է, վոր ամեն մի քաղաքացի իրավունք ունի դավանելու ցանկացած կրոնը: Դա յուրաքանչյուրի խղճի գործն է: Հենց այս պատճառով է, վոր մենք կիրառել ենք յեկեղեցու բաժանումը պետությունից: Բայց կիրառելով յեկեղեցու բաժանումը պետությունից ու դավանանքի ազատություն հռչակելով, մենք դրա հետ մեկտեղ յուրաքանչյուր քաղաքացու իրավունք ենք վերապահել համոզելու մի-



ջոցով, պրոպագանդայի ու ագիտացիայի միջոցով պայքարելու այս կամ այն կրոնի դեմ, ամեն մի կրոնի դեմ: Կուսակցությունը չի կարող չեզոք լինել կրոնի նկատմամբ, և նա հակակրոնական պրոպագանդա յե մղում բոլոր ու ամեն տեսակ կրոնական նախապաշարմունքների դեմ, վորովհետև նա գիտության է կողմնակից, իսկ կրոնական նախապաշարմունքները գիտության դեմ են գնում, վորովհետև յուրաքանչյուր կրոն գիտության հակադիր մի բան է... կուսակցությունը չի կարող չեզոք լինել կրոնական նախապաշարմունքների նկատմամբ և նա պրոպագանդա յե մղելու այդ նախապաշարմունքների դեմ, վորովհետև դա շահագործող դասակարգերին աջակցող և այդ դասակարգերի նկատմամբ հնազանդություն քարոզող հետադեմ հոգևորականության ազդեցությունը խափանելու ճիշտ միջոցներից մեկն է... Հակակրոնական պրոպագանդան այն միջոցն է, վորը պետք է մինչև վերջը հասցնի հետադիմական հոգևորականության լիկվիդացիայի յենթարկելու գործը»*):

*) Ի. Ստալին, «Լենինիզմի հարցերը», եջ՝ 246, 1935 թ. Կուսհրատ:

Այս խոսքերով ընկեր Ստալինը միանգամայն պարզ կերպով մատնանշել է կրոնի վնասի վրա, նրա հակագիտականության վրա, նրա ռեակցիոն նշանակության վրա։

Մեր յերկրի պատմությունը, բոլոր տարիների, սկսած Հոկտեմբերյան հեղափոխության սկզբից մինչեվ այժմվա պատմությունը լիովին հաստատում է ընկեր Ստալինի այս խոսքերը։ Յեկեղեցին, ցարական կառավարության, կապիտալիստների և կալվածատերերի հավատարիմ պաշտպանը, պրոլետարական մեծ հեղափոխությանը սվիններով ընդառաջեց, Հոկտեմբերյան օրերին յեկեղեցականները և աղանդավորների առաջնորդները գոյություն չունեցող աստծու անունով բանվորներին և գյուղացիներին հանդարտվելու, խաղաղության և յեղբայրության կոչ եյին անում, իսկ ըսպիտակ գվարդիականներն այդ ժամանակ զանգակատներից գնդակահարում եյին ապստամբած բանվորներին։

Քաղաքացիական պատերազմի ժամանակ տերտերները, քեշիշները, ռաբբիները, մոլլաները և աղանդավորների քարոզիչներն օգնում եյին Կոլչակին, Պետլյուրային, Վրանգելին և օտար ինտերվենտներին։



Կոլչակի զորքերի մեջ նույնիսկ հոգեվորականության հատուկ գնդեր եյին կազմակերպված։ Քաղաքացիական կռվի յուրաքանչյուր մասնակից այդ աստծու «սպասավորների» հակահեղափոխական գործունեյության բազմաթիվ փաստեր կհիշի։

1921 թ. սովի ժամանակ, յեկեղեցականները պայքարում եյին յեկեղեցական թանկարժեք իրերի վերցման դեմ, որ, աշխատավորների պահանջով, կատարում եր խորհրդային իշխանությունը Վոլգայի գյուղացիներին սովամահությունից փրկելու համար։

Քաղաքացիական պատերազմը վերջանալուց հետո, յեկեղեցականները և աղանդավորների պարագլուխները չդադարեցին խորհրդային իշխանության դեմ պայքարելուց։ Յեկեղեցական կամարների տակ և աղանդավորների օթևաններում թաղնվում եյին բանվորների ու գյուղացիների ամենակատաղի թշնամիները։ Յեկեղեցական խորհուրդների անդամների և աղանդավորական համայնքների ղեկավարների շրջանում շատ հաճախ հայտաբերվում եյին նախկին գործարանատերեր և կալվածատերեր, գեներալներ և ժանդարմներ, իշխաններ ու կոմ-

ներ: Նախկին ցարական Ռուսաստանի այս բոլոր բեկորները—կուլակների ու նեպմանների հետ դաշնակցած կրոնի դրոշի տակ գաղտնի վնասարարական աշխատանք էին տանում, փորձում էին հակահեղափոխական դավադրություններ կազմակերպել:

Յեկեղեցականները և աղանդավորական պարագլուխները իրենց հակահեղափոխական գործունեությունը չեն դադարեցրել մինչև այսոր: Չկա այնպիսի ձեռնարկում ու անցք, վոր նրանք չօգտագործեն իրենց զզվելի նպատակների համար:

Դորոխովյան գրուպայի (Կուրովսկու ռայոն) չթի Փաբրիկաներում աղանդավորները դուրս յեկան ստախանովյան շարժման դեմ: Ստարոոբրյադնիկների ակտիվիստներն սկսեցին ջուլհակ, ստախանովական կանանց դեմ բամբասանքներ տարածել, թե իբր նրանց բարքը լավ չէ: Դա քիչ հաջողություն ունեցավ: Այն ժամանակ վճռական միջոցներ ձեռք առան: Կին ստախանովական Լյալինայի դազգյահն աշխատեցին շարքից հանել, իսկ Վոլվախովայի հենքը կտրեցին:

1936 թ. ամառը արևի խավարումից առաջ յեկեղեցականները և աղանդավորա-



կան տարրերն ամենաանհեթեթ և հրեշավոր լուրեր էին տարածում, աշխատելով վախեցնել հետամնաց աշխատավորներին: Սապոժկովսկու ռայոնում կրոնավորները «մարգարեանում էին», թե արեգակի խավարման որը աշխարհը կվերջանա: Շացկու շրջանի Ժդանովկա ու Մանուիլովկա գյուղերում նման լուրերին հետամնաց կոլտնտեսականներից վոմանք հավատացին, նրանք հավաքվեցին բաղնիք, սպիտակ հագնվեցին, լուսամուտները սև վարագույր իջեցրին և սպասում էին աշխարհի վերջին:

Նույն տարվա ամռանը յերաշտի ժամանակ յեկեղեցականները, ձգտելով կոլտնտեսականներին բերքի համար մղվող խակական պայքարից հետ պահել, փորձեցին մաղթանքներ կազմակերպել անձրևի համար, վոր և նրանց հաջողվեց մի քանի վայրերում: Տերտեր Խորոտավր Կալուգայի ռայոնի Դվորցի գյուղից, իր ակտիվիստների միջոցով փորձեց մաղթանքին մասնակից դարձնել մինչև անգամ կարտոֆիլի հայտնի ստախանովական Կլավդիա Յեպիխինայի (Ձերժինսկու անվան կոլտըն-

տեսություն) բրիգադի կոլտնտեսուհիներից մեկին:

Բնակչության համամիութենական մարդահամարից առաջ Պուշկարինի շրջանի Զորնայա Սլոբոդա գյուղում կրոնականները լուր տարածեցին, թե հավատացյալներին կգրեն ու կզրկեն հացից: Լոպատենկոսկու շրջանում ժողովրդի թշնամիները հետամնաց աշխատավորներին վախեցնում եյին այն բանով, թե երբ հունվարի 6-ին «Ծննդյան լուսաբաց տոնին» Բարթուղիմեոսյան գիշեր կսարքվի և կկոտորեն նրանց, ովքեր անհավատ կգրվեն (ուրեմն բոլորդ հավատացյալ գրվեցեք):

Կրոնական կազմակերպությունների գործունեության մեջ առանձին ուշադրության արժե նկատել խորհրդային նոր Սահմանադրության նախագծի հրատարակվելուց հետո: Պաշտամունքի սպասավորները փորձում են օգտագործել խորհրդային դեմոկրատիայի ընդլայնումը, որպեսզի ամրացնեն իրենց դիրքերը և ուժեղացնեն իրենց հակահեղափոխական ազդեցությունը հետամնաց աշխատավորների վրա: Տերտերներն ստորագրություն են հավաքում յեկեղեցիներ բանալու, զանգակ



կախելու թույլտվություն ստանալու, խաչերթերի և այլն համար: Միաժամանակ տերտերները մի շարք վայրերում ուժեղացրին յեկեղեցիների և աղոթատների նորոգումը:

Իրենց չարամիտ ագիտացիան և հակահեղափոխական գործունեությունը ժողովրդի թշնամիներն առանձնապես այնտեղ են տանում, վորտեղ բացակայում է մեր բոլշևիկյան ագիտացիան և պրոպագանդան, մասսաների քաղաքատնտեսական աշխատանքը:

«Քրիստոս հարյավ» կերգեն տերտերները և աղանդավորական քարոզիչները, յերազելով հին, շահագործական կարգերի հարության, մեր յերկրում կապիտալիզմի ռեստավրացիայի մասին:

«Քրիստոս հարյավ» կասեն նրանք հավատացյալ աշխատավորներին: Իբր սպասեցեք, յերբ նա յերկրորդ անգամ կգա, այն ժամանակ «ահեղ դատաստանը» կլինի:

Վոչ մի աշխատավոր չպետք է խաբվի ժողովրդի թշնամիներից, վորոնք թաքնըվում են խաչի ու աղոթքի տակ: Պետք է ուժեղացնել հեղափոխական զգոնությունը, պետք է ձգտել բոլշևիկյան [illegible],

վորպեսզի կարելի լինի մերկացնել թշնամուն ինչ դիմակ էլ նա դրած լինի, ինչ զգեստ էլ նա հագած լինի:

## ԿՐՈՆԻ ԴԵՄ ՀԱՆՈՒՆ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ

«Զատիկի» տոնն որացույցով շատ հաճախ համարյա զուգադիպում է մայիսի մեկի պրոլետարական տոնին:

Այս տարի քրիստոնեական «զատիկը» ուղղափառ յեկեղեցին տոնեց մայիսի 2-ին:

Յերկու տոն միմյանց կողքի, բայց դրանց միջև խորը, անանցանելի անդունդ կա:

1912 թ. մայիսմեկյան թռուցիկում ընկեր Ստալինը գրում եր.

«Յուրաքանչյուր դասակարգ իր սիրած տոներն ունի: Ազնվականները կարգել են իրենց տոները, դրանց ժամանակ նրանք հռչակում են գյուղացիներին կողոպտելու իրենց «իրավունքը»: Բուրժուաներն ունեն իրենցը, և դրանց ժամանակ նրանք «արդարացնում են» բանվորներին շահագործելու իրենց «իրավունքը»: Տերտերներն էլ իրենց տոներն ունեն և դրանց ժամանակ նրանք փառաբանում են գոյություն ունեցող կարգերը, վորոնցում աշխատա-



վորները կորչում են չքավորության մեջ, իսկ ձրիակերները խեղդվում են պերճանքի մեջ:

Բանվորներն էլ պիտի ունենան իրենց տոնը, վորի ժամանակ նրանք պետք է հռչակեն ընդհանուր աշխատանք, ընդհանուր ազատություն, բոլոր մարդկանց ընդհանուր հավասարություն: Այս տոնը մայիսի մեկի տոնն է»*):

Յեթե «զատիկը» հին աշխարհի տոնն է, շահագործական կարգերը փառաբանելու տոնն է, ապա մայիսի 1-ը այդ շահագործական կարգերի դեմ, բռնության և ճընշման ամբողջ աշխարհի դեմ պայքարելու տոնն է, ընդհանուր աշխատանքի, ընդհանուր ազատության, բոլոր մարդկանց ընդհանուր հավասարության համար մղվող պայքարի տոնն է:

Մեր յերկրում այս բոլորն արդեն նվաճված ու ձեռք են բերված:

Մեր հեղափոխության մեծ նվաճումները արձանագրված են ստալինյան նոր Սահմանադրության մեջ:

---

*) Ի. Ստալին, *Մայիսմեկյան թռուցիկ*, 1912 թ., «Պրավդա», 1936 թ. մայիսի 1:

ՍՍՀՄ աշխատավորները միլիոնավոր մասսաները բռնված են մարդկության պատմության մեջ դեռ չտեսնված աշխատավորական ենտուզիազմով: Նրանք նորանոր հերոսներ են տալիս, վորոնք անսահմանելիորեն նվիրված են իրենց սոցիալիստական հայրենիքին, իրենց հարազատ կոմունիստական կուսակցության և բոլոր աշխատավորների սիրելի առաջնորդին, ընկեր Ստալինին:



## ԻՍՊԱՆԻԱԿԱՆ ՌԱԶՄԱՃԱԿԱՏՆԵՐՈՒՄ

Ապրիլ ամիսն իր հետ մեծ փոփոխություններ չբերեց Իսպանիայի ֆրոնտներում: Գերմանո-իտալական ֆաշիստ ինտերվենտներն Իսպանիա նոր ուժեր են կենտրոնացնում նոր, մեծ հարձակման անցնելու համար:

Ռեսպուբլիկյան մամուլն ամեն օր հաղորդում է այն մասին, թե ինչպես Իտալիայի և Գերմանիայի բազմաթիվ զորանոցներում նոր զորամասեր են կազմվում և զանազան ճանապարհներով Իսպանիա ուղարկվում: Վերջին օրերս հայտնի դարձավ նաև, վոր ամեն գիշեր Գերմանիայից ինքնաթիռների մի նոր խումբ է ուղեվորվում Իսպանիա, որպեսզի նոր մեծ հարձակման համար, առաջին հերթին Բիլբաոյի և Մադրիդի վրա: Իտալիայից և Գերմանիայից ուղարկվում են նաև մեծ քանակությամբ քիմիական

 

նյութեր, մի բան, որը վկայում է այն մասին, թե ֆաշիստ ինտերվենտներն այս անգամ կանգ չեն առնելու նույնիսկ թունավոր գազեր գործածելու առաջ, միայն թե շուտափույթ կերպով ոչնչացնեն Իսպանիայի դեմոկրատական հանրապետությունը, զրկեն Իսպանիայի աշխատավորությանն ազատությունից ու փաստորեն դարձնեն իրենց գաղութը, ինչպես այդ արեց Իտալիան Հաբեշստանի նկատմամբ:

Չնայած այն բանին, որ Իսպանիայի տերիտորիայի մի մասն այժմ գտնվում է ֆաշիստների ձեռքը, այնուամենայնիվ վճռականապես կարելի յե ասել, որ Ֆրանկոյի և նրա գերմանական ու իտալական խնամակալների գործերն այնտեղ վատ են ընթանում: Այս տարվա փետրվար ամսից հետո ծավալված ռազմական գործողությունների արդյունքները ցույց են տալիս, որ հանրապետական բանակը հետզհետե կազմակերպվում և ամրապնդվում է, մեծանում է հանրապետական Իսպանիայի ոչ միայն դիմադրելու, այլև հարձակվելու կարողությունը: Եթե պատերազմի առաջին շրջանում Իսպանիան չուներ կանոնավոր, լավ կազմակերպված,



մի կենտրոնական հրամանատարությամբ գործող բանակ, և ստիպված էր բավարարվել մեծ մասամբ միայն ժողովրդական միլիցիայի ուժերով, ապա այժմ այդպիսի բանակ արդեն կա և այդ բանակն ամեն օր ավելի բազմամարդ, լավ կազմակերպված և լավ զինված է դառնում: Ստեղծվում է կենտրոնացած խոշոր ռազմական արդյունաբերություն, առանց որի նույնպես անհնարին է ապահովել հաղթանակը, քանի որ Իսպանիայի գործերին չմիջամտելու կոմեդիան փաստորեն մեկուսացված դրություն է ստեղծել հանրապետական Իսպանիայի համար, մինչդեռ Ֆրանկոն առատ օգնություն է ստանում իր ֆաշիստ բարեկամներից՝ Հիտլերից և Մուսոլինիից:

Վերջին ամիսների պատերազմական գործողությունների հաշվեհարդարը կատարելիս, անհրաժեշտ է 4 հիմնական ճակատների վրա կանգ առնել: Առաջին ճակատը կռիվներն են հարավում՝ Մալագան գրավելու համար: Պատերազմական գործողությունների յերկրորդ ճակատն ընդգրկում է կռիվները Խարամա գետի շրջանում, յերրորդը՝ Գվադալախարան և ապա վերջինը՝ կռիվները Բասկյան ճակատում:

...Մալագայի—Իսպանիայի հարավային ծովափի այդ խոշոր նավահանգստի համար ծավալվեցին այս տարվա հենց սկզբից: Մալագայի վրա հարձակումը իտալո-գերմանական զորամասերն ու խռովարարներն սկսեցին Էստեպոնայի սեկտորից: Կատաղի գրոհի անցնելով ծովից, ոդից և ցամաքից, ինտերվենտները հունվարի 14-ին գրավեցին Էստեպոնան (գտնվում է Միջերկրական ծովի ափին, Մալագայից հարավ արևմուտք): Անմիջապես հետո նրանք շարունակեցին գրոհը ծովափով, դեպի արևելք և 2 օր հետո գրավեցին Մարբելլան: Հանրապետականներն այս շրջանում մեծ ուժեր չունեյին: Մալագան և ամբողջ հարավային ծովափը պաշտպանվում էր գերազանցապես ժողովրդական միլիցիայի ուժերով: Չնայած դրան, նրանք կարողացան բավական յերկար ժամանակ պահել ինտերվենցիոն զորքերի առաջխաղացումը: Մարբելլայի գրավումից հետո մինչև Մալագայի եվակուացիան, մինչև փետրվարի 8-ը խռովարարների ուժերն անընդհատ ռմբակոծում էին հանրապետականների բոլոր դիրքերը: Ծովից անընդհատ ռմբակոծում էին ափը 9



ռազմանավերը, մինչդեռ հանրապետական ռազմանավերի ճանապարհը փակել էր գերմանական և իտալական նավատորմիղը: Միաժամանակ ռմբակոծվում էին հանրապետականները նաև ոդից: Իտալական բանակը գործի դրեց ուժեղ տեխնիկա, բազմաթիվ հրետանիներ և տանկեր, ոդանավեր: Հունվարի 22-ից արդեն ինտերվենտները գործի յեն անցնում նաև հյուսիսից՝ Գրենադայի, Անտեկերայի և Ռոնդայի շրջաններից: Այսպիսով շրջապատելով Մալագայի շրջանի ծովափը հյուսիսից՝ ցամաքից և հարավից՝ ծովից, խռովարարների և ինտերվենտների ուժերը միաժամանակ առաջ են շարժվում նաև արևմուտքից դեպի արևելք, ծովափի յերկարությամբ: Մի քանի անգամ փոխելով հարձակման ուղղությունը, վորպեսզի քողարկեն իրենց գլխավոր հարվածը, փետրվարի 6-ին արդեն խռովարարներն վճռական գործողությունների յեն անցնում Կոլմենարի (Մալագայից հյուսիս) և ապա Մալագայի նկատմամբ: Նույն ժամանակամիջոցում Կադիքսից նրանց օգնության են գալիս նոր ջոկած իտալական զորամասերը: Փետրվարի 8-ին արդեն հանրապետականները նա-

Հանձնում են Հակառակորդի չատ ավելի մեծ ուժերի առջև և եվակուացիայի յեն յենթարկում Մալագան: Հանրապետական զորքերի հետ միասին քաղաքից հեռանում են նաև Մալագայի բնակչության մեծ մասը: Գրավելով Մալագան ֆաշիստները դաժանորեն չարդի յենթարկեցին հազարավոր խաղաղացիների:

Մալագայի գրավումը բացահայտ կերպով կատարեցին իտալական զորքերը: Մալագայի համար մղվող կռիվները միանգամ ևս ապացուցեցին, վոր իտալո-գերմանական համաձայնությունն իր սեփական զորամասերն է գործի դնում այնտեղ և իսպանական գնդերը դադարել են ներքին խռովություն միայն լինելուց: Պատերազմն Իսպանիայում վորոշակի կերպով վեր եր ածվել ինտերվենցիոն պատերազմի: Իզուր չէր, վոր Մալագայի անկումից անմիջապես հետո Ֆրանկոն շնորհակալական հեռագիր ուղարկեց Մուսոլինիին՝ իրեն ցույց տրված մեծ ոգնության համար:

Փետրվարի սկզբներին մի կողմից առաջխաղալով դեպի Մալագա, մյուս կողմից կատաղի կռիվներ եյին մղում ֆաշիստները Մադրիդի համար, Յարամա գետի շրջա-



նում: Հարձակումն սկսելով հարավ-արևմելքից, նրանք ցանկանում եյին Արգանդայից և Վասիա Մադրիդից դուրս գալ Վալենսիայի ճանապարհի վրա, կտրել Մադրիդը Վալենսիայից և ապա շրջապատելով այն, վերցնել մի չեչտակի հարվածով: Այդ պլանը կազմել եյին գերմանական ռազմագետները: Ինչպես հայտնի յե, Մադրիդը հյուսիս արևմուտքից և հարավից ու հարավ արևելքից գրավելու բոլոր փորձերը և՛ հոկտեմբերին ու նոյեմբերին, և՛ դեկտեմբեր ու հունվար ամիսներին անհաջողությամբ եյին վերջացել: Այժմ գերմանական նոր պլանն իրագործելու համար Յարամայի հատվածում կենտրոնացվում եյին իտալո-գերմանական ուժեր, գերմանական սպաների ղեկավարությամբ: Թշնամու ուժերն այդ հատվածում հավասար եր 25 հազար մարդու, 100 տանկի, 150 հրանոթների, բազմաթիվ ոդանավերի:

Փետրվարի 6-ին արդեն խռովարարները, մի շարք նախապատրաստություններից հետո, վճռական գրոհի անցան այդ հատվածում: Ամբողջ 3 որ հանրապետականները կատաղի դիմադրություն եյին ցույց տալիս խռովարարների գրոհներին,

վորոնք ամեն կերպ աշխատում եյին անցնել Խարամա գետի արեվելյան ափը: Փետրվարի 9-ից արդեն հակահարձակման են անցնում հանրապետականները և փետրվարի 11-13-ի ընթացքում կանգնեցնում են խռովարարների առաջխաղացումը Արգանդայի ուղղությամբ: Փետրվարի 17-ից կռվի նախաձեռնությունն ամբողջովին անցնում է հանրապետականներին, վորոնք զգալիորեն հետ են մղում խռովարարներին իրենց գրաված դիրքերից: Փետրվարի 27-ից միայն կռիվները Խարամայի հատվածում ժամանակավորապես մեղմանում են, նոր ուժով վերսկսելով արդեն մարտի կեսերին, Գվադալախարայի կռիվների ժամանակ:

Փետրվարյան կռիվների ընթացքում խռովարարները կարողանում են գրավել վորոշ, թեև չատ չնչին տարածություն: Սակայն հիմնական խնդիրը— Վալենսիայի ճանապարհի գրավումը և Մադրիդի շրջապատումը— նորից վիժում է, չնայած նրան, վոր խռովարարներն ունեյին բոլոր տեխնիկական միջոցները այդ նպատակին իրագործելու համար:

Խարամայի կռիվները վճռական նշանա-



կություն ունեցան նոր կազմակերպված հանրապետական բանակի ուժերի ու կարողության ստուգման համար: Այդ կռիվները ցույց տվին, վոր հանրապետական բանակի մարտիկները վոչ միայն գիտեն հերոսաբար կռվել, այլև գիտեն ճարպիկ մանեվրներ կատարել, հաջողությամբ օգտագործել իրենց բոլոր միջոցները՝ հակառակորդի թվով ու տեխնիկական զինվածությամբ գերազանց ուժերին ջախջախելու համար:

Անհաջողությունը Խարամայի հատվածում ստիպեց գերմանո-իտալական ինտերվենտներին ավելի ծավալուն ռազմական գործողությունների անցնել:

Փետրվարի ընթացքում նրանք սկսեցին մեծ ուժեր կենտրոնացնել Մադրիդից հյուսիս-արևելք—Սիգուենսայի շրջանում: Այնտեղ ուղարկվեցին և՛ Մալագայի գրավմանը մասնակցած ուժերը, և՛ Գերմանիայից, Իտալիայից ու Աֆրիկայից նոր ուղարկվող խմբերը: Սիգուենսայում կենտրոնացած իտալո-գերմանական էքսպեդիցիոն կորպուսն այսպիսով համախմբում էր ավելի քան 30 հազար մարդ, 150 տանկ, 80 ինքնաթիռ, 400 հրանոթ և այլն:

Մարտի 9-ին սկսելով հարձակումը, ինտերվենցիոն զորքերը շարժվում էին յերեք ուղղությամբ, ընդհանուր հարված ուղղելով Գվադալախարայի վրա: Առաջին որերին լուրջ դիմադրության չհանդիպելով, նրանք անցնում են 25-30 կիլոմետր տարածություն, սակայն մարտի 10-11-ից արդեն հանրապետականները կազմակերպում են պաշտպանության գիծը և այնուհետեվ տանկերի ու ավիացիայի ոգնությամբ վճռական հակագրոհի յեն անցնում: Մարտի 13-ին հանրապետականները կարծանիչ հարված են հասցնում Գվադալախարայի խճուղով առաջ շարժվող իտալական զորամասերին, խուճապ առաջացնելով նրանց մեջ: Իտալական հետևակ զորամասերը փախուստի յեն դիմում, թողնելով հրանոթները և զինամթերքը: Հաջորդ որերի ընթացքում հանրապետականներն իրար հետևից գրավում են մինչև Բրիուեգա ընկած տարածությունը, իսկ մարտի 18-ին արդեն, կատաղի կռիվներից հետո գրավում են նաև Բրիուեգան:

Այսպիսով Գվադալախարայի օպերացիան ավարտվում է իտալական էքսպեդիցիոն կորպուսի կատարյալ պարտությամբ, հան-



րապետականների կատարյալ հաղթանակով: Այդ հաղթանակը վերջնականապես ցույց տվեց հանրապետական յերիտասարդ բանակի ուժերի աճումն ու ամրապնդումը:

Ապրիլ ամսվա և մայիսի առաջին որերի կռիվներում ուշադրության արժանի տեղ են գրավում պատերազմական գործողությունները Բիսկայան ճակատում, և հատկապես Բիլբաոյի շրջանում: Մի անգամից լիկվիդացիայի յենթարկելու համար հյուսիսային ճակատը, վորը շատ ուժեր ու ջանքեր եր խլում Ֆրանկոյից, խանգարելով նրան գործելու Մադրիդի ճակատում, խռովարարները մարտի վերջից հարձակման են անցնում այնտեղ: Գեներալ Մոլան այնտեղ է կենտրոնացնում 15 հազար մարդ, 100-120 հրանոթ, 30 տանկ և 80 ինքնաթիռ, բոլորը գերմանական ու իտալական արտադրանքի և իտալական ու գերմանական դեկավար անձնակազմով: Մարտի 31-ին գեներալ Մոլան հարձակման է անցնում Բիլբաոյի ուղղությամբ: Կատաղի կռիվները տեվում են մի քանի որ: Սկզբում առաջ շարժվելով, խռովարարները Ոչանդիանոյի մոտ ծանր կորուստներ են ունենում, սակայն ոգնություն ստանալով ավիացիո-

յան ճակատից, նրանք նորից վերսկսում են հարձակումը: Նորից վերսկսելով հարձակումը ապրիլի 11-ին և նորից չկարողանալով առաջ շարժվել, խռովարարները մեծ ընդմիջումից հետո ընդհանուր արշավի յեն անցնում ապրիլի 20-ին: Ֆաշիստների 12 հազարանոց զորամասերին օգնում են ավիացիան և ռազմանավերը, որոնց թվում նաև նրանց ամենահզոր գծանավը՝ «Եսպանիան»: Սակայն ինչպես արևելքից, նույնպես և հարավից սկսած հարձակումը դեպի Բիլբաո նորից հետ է մղվում: Խռովարարները մեծ կորուստներ են կրում այդ կռիվներում, առանց փոքր հաջողություն ձեռք բերելու: Իսկ մայիսի մեկին հանրապետական զորքերը Բերմեոյի մոտ հետ մղելով ֆաշիստներին, վճռական պարտության են մատնում նրանց: Խռովարարներն այդ օրը կորցնում են 2500 մարդ, բազմաթիվ իտալացիներ գերի յեն ընկնում, գրավվում են մեծ քանակությամբ ռազմամթերք, հրանոթներ և այլն: Խուճապահար իտալական ինտերվենցիոն բանակի զինվորները փախչում են կռվի դաշտից այնպես, ինչպես Գվադալախարայի կռվի ժամանակ: Միաժամանակ ծանր



պարտություն է կրում նաև իտալո-իսպանական միուս խառը ջոկատը, Դուրանգոյի ճանապարհի վրա, Ուրիմենդի սարի մոտ, կորցնելով մոտ 1000 մարդ: Մայիսմեկյան այդ հաղթանակին նախորդում է նույնչափ մեծարժեք մի այլ հաղթանակ— ապրիլի 30-ին հանրապետական հերոս օդաչուները խորտակում են «Եսպանիան»— զրկելով խռովարարներին իրենց ամենից ավելի հզոր գծանավից: Հետաքրքիր է այն հանգամանքը, որ հերոս օդաչուները յերիտասարդներ են յեղել, նրանցից մեկը 16 տարեկան:

***

Տասը ամիս է արդեն, որ ձգձգվում է պատերազմն Իսպանիայում, քայքայելով ու ավերելով յերկիրը: Տասնյակ քաղաքներ են կործանվել այդ ժամանակամիջոցում Իսպանիայում, հարյուրավոր գյուղեր են հիմնահատակ ավերվել, հարյուր հազարավոր բնակիչներ են ոչնչացվել: Հենց միայն ապրիլ ամսում, Բասկյան ճակատում գերմանական ավիացիան հրկիզել է 3 քաղաք— Դուրանգոն, Եյբարը և Գերնիկան: Գերնիկան Բասկյան ժողովրդի հին մայրաքաղաքն է հնագույն կուլտուրական հուշարձաններով, գերմանական ավիացիան

ամբողջապես կործանել է պատմական քաղաքը, գնդացիրային կրակով կոտորել բնակչությանը: Սակայն ավերիչ այդ պատերազմը վոչ միայն չի հուսալքել իսպանական ժողովրդին, այլև համախմբել է նրա ուժերը՝ ֆաշիզմի դեմ պայքարելու համար: Գերմանո-իտալական ֆաշիզմի դեմ մղվող պատերազմի բովում ծնված հանրապետական Իսպանիայի բանակը ամրանում ու հզորանում է, հաջողությամբ դիմադրելով թշնամու միացյալ ուժերին: Դրան հակառակ, աճում է դժգոհությունը ֆաշիզմի բանակում, քայքայվում է նրա թիկունքը: Ամեն օր հանրապետականների կողմն են անցնում բազմաթիվ խռովարար զինվորներ, վորոնք հետո դենքը ձեռքին կռվում են ինտերվենցիոն ֆաշիստական բանակի դեմ: Կառավարության հրատարակած թռուցիկները, վորոնք թշնամու դիրքերն են նետում հանրապետական խիզախ օդաչուները, ներումն են խոստանում խռովարար զինվորներին, յեթե նրանք հրաժարվեն կռվել Իսպանիայի օրինական կառավարության դեմ և անցնեն նրա կողմը: Խռովարարների բանակի բարոյական դրությունը չի բարձրանում նաև նրանով,



վոր նրանց օգնության են գալիս իտալական ու գերմանական զորամասերը:

Բռնի ուժով խռովարարների բանակը բերած իսպանացի գյուղացիները ականատես են լինում այն բանին, թե ինչպես գերմանացի և իտալացի սպաներն ու հրամանատարները նայում են իրենց յերկրի վրա, վորպես գաղութի և ինչ է սպասում իսպանական աշխատավորությանը յեթե հաղթի գեներալ Ֆրանկոն: Զնայած, վոր Ֆրանկոն նրանց հեռվից միշտ պահում է մարոկացիների կամ ինտերվենտների ջոկատ, վորպեսզի փախուստի դիմողներին ջարդի, այնուամենայնիվ նույնիսկ առանձին ջոկատներով իսպանացիներին հաջողվում է անցնել ժողովրդական բանակի կողմը:

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԱՌԱՐԱՆ

## ԹԵՐԹԵՐՈՒՄ ՀԱՆԴԻՊՈՂ ԱՌԱՆՁԻՆ ԲԱՌԵՐԻ ՅԵՎ ՀԱՍԿԱՑՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲԱՑԱՏՐՈՒԹՅՈՒՆԸ

**Գերմանիայի գաղութային պահանջները**

Գերմանիայի ռազմական զորության ուժեղացմանը զուգընթաց ֆաշիստական դիվանագետները՝ սկսած 1935 թվականից ավելի համախակի և ավելի սուր կերպով պահանջ են առաջադրում, որ Գերմանիային վերադարձվեն նրա այն նախկին գաղութները, որոնց տիրել է նա իմպերիալիստական պատերազմից առաջ: Ամենասուր կերպով այդ հարցը դրեց ֆաշիստական Գերմանիան 1936 թվականի վերջերին և ընթացիկ տարվա սկզբներին: Սակայն, յերբ Անգլիան միլիարդավոր զումարներ հատկացրեց սպառազինությանը, գերմանական ֆաշիզմը մեղմացրեց տոնը և շտապեց հավատացնել Անգլիային, թե Գերմանիան



իր շահերը նախ և առաջ կենտրոնացնում է Կենտրոնական Յեվրոպայում, ուստի պատրաստ է հրաժարվելու իր գաղութային պահանջներից, պայմանով որ նրան «ձեռքերի ազատություն» տրվի Յեվրոպայի հարավ-արևելքում և արևելքում:

Մի քանի անգլիական քաղաքագետներ, որոնք հույս ունեն փրկվել գերմանական գաղութային պահանջներից, զիջումներ անելով Յեվրոպայում, պետք է հիշեն, որ Գերմանիան ինչպես հեշտությամբ ու ճարպկությամբ հրաժարվում է իր գաղութային պահանջներից, այնպես էլ նոր պայմաններում նորից կդնի իր մրցակիցների առջև գաղութային կողոպուտի պահանջները: Գաղութային պահանջները գերմանական դիվանագիտության համար շանտաժի մի գործիք են: Նրանք վտանգ են պարունակում ընդհանուր խաղաղության համար և հանդիսանում են Գերմանիայի կողմից նոր համաշխարհային պատերազմ պատրաստելու բաղկացուցիչ մասը:

Իսլամ: (Արաբերեն «հնազանդություն» բառից)— այն կրոնը, որն առաջ է յեկել Արաբիայում 7-րդ դարում: Նա կոչվում է նաև մահմեդական կրոն՝ իր հիմնադիր

«Մուհամմեդ մարգարեյի» անունով: Մահմեդական կրոնի հետեվորդներն իրենց համարում են «ուղղափառ» (արաբերեն մուսուլման): Այդ բառից է ծագում իսլամի երկրորդ անունը՝ մուսուլմանականություն: Իսլամը, ինչպես ամեն մի այլ կրոն, քարոզելով հնազանդություն շահագործողներին և մխիթարելով երկրի երեսին ճնշվածներին, ծառայում է շահագործողներին՝ ճնշելու և ստրկացնելու աշխատավորությանը: Իսլամը տարածված է առավելապես Ասիայում և Աֆրիկայում (արաբական երկրներ, Իրան, Թյուրքիա, Հնդկաստան և այլն): Իսլամի հետեվորդներ կան նաև մեր երկրի արեվելյան շրջանների մի մասում: Իսլամը դավանողները բաժանվում են երկու աղանդի (սեկտայի)—շիիթների և սուննիթների:

Կղերականություն— լատիներեն «կլերիկալիս» բառից, որ նշանակում է եկեղեցական, հոգեվոր: Կղերականություն— նշանակում է մի ձգտում՝ հաստատել կամ ամրապնդել եկեղեցու և հոգեվորականության իշխանությունն ու ազդեցությունը երկրի քաղաքական և կուլտուրական կյանքում: Կղերականները և կղերական կու-



սակցությունները պայքար են մղում ժողովրդական կրթության գործը հոգեվորականության ձեռքը հանձնելու համար: Կղերականները, հանդիսանալով ռեակցիոն, շահագործող դասակարգերի հենարանը, պայքար են մղում մտքի ազատության և ամեն տեսակ առաջադիմության դեմ: Կղերական կուսակցությունները, դեմագոգիկ կերպով օգտագործելով քաղքենիական և գյուղացիական մասսաների ու բանվորների ամենահետամնաց խավերի մտավոր մթությունը, փորձում են հետ պահել աշխատավորներին հեղափոխական պայքարին մասնակցելուց: Կղերական քաղաքական կուսակցությունները իրենց ռեակցիոն նպատակները սքողում են տարբեր ցուցանակներով, ինչպես օրինակ «քրիստոնեական- դեմոկրատիկ կուսակցություն», «քրիստոնեական-սոցիալիստական կուսակցություն», «ժողովրդական կաթոլիկ կուսակցություն» և այլն, և այլն: Կղերականությունն առանձնապես խորն արմատներ է գցել կաթոլիկ երկրներում (Ֆրանսիա, Իտալիա, Իսպանիա, Բելգիա, Ավստրիա):

Բացի քրիստոնեական կղերականությու-

նից, դոյություն ունի նաև այլ դավանությունների կղերականություն։ Սակայն նա ամենուրեք միացնում է բոլոր սև և ռեակցիոն ուժերը։

Հետպատերազմյան տարիներին աշխատավորների հեղափոխականանալը, բուրժուազիային, վորը կարիք ունի հոգեվորականության օժանդակությանը, մղում է կղերականության կողմը։

**Հնդկաստանի նոր «սահմանադրությունը»**։ 1937 թ. ապրիլի 1-ին Հնդկաստանում (Անգլիայի գաղութը) ուժի մեջ մտավ դեռ 1935 թվականին մշակված Հնդկաստանի «սահմանադրությունը» (այսպես կոչված Հնդկաստանի կառավարման ակտ)։ Հնդկաստանի 350 միլիոն ճնշված ժողովուրդն այդ նոր «սահմանադրության» մտցվելը նշեց համաժողովրդական սգով (խարտալ), գործադուլների և ցույցերի ալիքով, վորոնք ցրում էր վոստիկանությունը։

Հնդկաստանի նոր «սահմանադրությունը» մշակել են անգլիական չինովնիկներն առանց հնդկական ժողովրդի մասնակցության և վորը ջանադիր կերպով պահպանում է անգլիացիների գաղութային տիրապետության շահերը։ Նա ըստ արժանվույն



Հնդկաստանում կոչվեց «ստրկության խարտիա»։ Ազգաբնակության մի խումբ ազգայնական ու կրոնական հողի վրա մյուսի դեմ գրգռելու քաղաքականությունը, յերկրում ազգային ու կրոնական դժտություն հրահրելու քաղաքականությունը, ցայտուն կերպով արտահայտված է նոր «սահմանադրության» մեջ, վորի համաձայն պարլամենտի ընտրությունները կատարվում են ըստ **ազգային-կրոնական** կուրիաների (կուրիա նշանակում է ընտրողների միավորում ըստ գույքային, սոցիալական, ազգային և կրոնական նշանի)։

«Սահմանադրությունը» պահպանում է յերկրում ֆեոդալիզմի մնացուկները, իշխանական իրավունքներ տալով խոշոր և մանր իշխաններին, ամեն տեսակ ռաջաներին, մահարաջաներին և այլն, վորոնք հանդիսանում են անգլիական իմպերիալիզմի ամենավստահելի հենարաններից մեկը Հնդկաստանում։

«Սահմանադրությունը» ամեն կերպ սահմանափակում է Հնդկաստանի օրենսդրական օրգանների իրավունքները հօգուտ կենտրոնական կայսերական (այսինքն անգլիական) կառավարության և անգլիական

փոխարքային ու նահանգապետներին վերապահում է վերահսկելու իրավունք և ամբողջ գործադիր իշխանությունը։ Նոր «սահմանադրության» մեջ դեմոկրատիզմի նշույլ անգամ չկա՝ 350 միլիոն ազգաբնակությունից ընտրական իրավունք է ստացել միայն 35 միլիոն հոգի, այսինքն ամբողջ ազգաբնակության 10 տոկոսը։ Վորովհետև ընտրական իրավունքով են օժտված միմիայն այն անձինք, վորոնք ունեն գույքային վորոշ ցենզ կամ կրթություն, ապա բնական է, վոր «ձայնազուրկների» կարգն ընկան հիմնականում բանվորներն ու գյուղացիները։

Հնդկաստանի նոր «սահմանադրությունը» թելադրել են անգլիական իմպերիալիստները յերկրում բուռն թափով բարձրացող ազգային ազատագրական շարժման յերկյուղից։ Հնդկաստանի ազգային կոնգրեսի նախագահ Ջավահարլալ Նեռուն (Հնդկաստանի նացիոնալիստական կուսակցություն), «սահմանադրությամբ» ստեղծված հնդկական ֆեդերացիան վորոշում է վորպես «շղթայակապ ֆեդերացիա, վոր գտնվում է յերկրի ամենառեակցիոն ուժերի վերահսկողության տակ»։ Նա այդ «սահ



մանադրությունը» հակադրում է խորհրդային ֆեդերացիան, վորը ներկայացնում է «Խորհրդային սոցիալիստական պետությունը և այնպիսի տնտեսակարգ, վորը վիթխարի առաջադիմություն է բերել բոլոր ուղղություններով»։ Հնդկաստանի բանվորական և գյուղացիական մասսաների գիտակցության մեջ որեցոր ավելի լայն և խորն է թափանցում հակաիմպերիալիստական ժողովրդական ճակատն ամրացնելու գաղափարը՝ պայքարելու հնդկական ժողովրդի դեմոկրատիկ իրավունքների ու անկախության համար, առանց չակերտների հնդկական սահմանադրության համար։

Միֆոլոգիա— (դիցաբանություն)— հունարեն բառ է, վոր նշանակում է պատմվածք։ Մյութոսներն առասպելներ են աստվածների և աստվածացրած հերոսների մասին, վորոնք կազմում են հին ժողովուրդների հավատալիքների մի մասը։ Միթոլոգիան այդպիսի մյութոսների առասպելների մի խումբն է։ Առանձնապես հայտնի յեն հունական միթոլոգիան և հունական մյութոսների հերոսները։ Մյութոսներ ունեն ամեն մի կրոն։ Որինակ՝ քրիստոնեական կրոնի հիմքն են կազմում այն մյութոսները

(առասպելները), որոնք վերաբերում են կույս Մարիամի անարատ հղացմանը, Հիսուսի ծննդյանը, նրա մահվան, «հարություն առնելուն» և «երկինք համբառնալուն»: Սովորական լեզվում մյութոս նշանակում է անիրագործելի մի երազ, ոչ ճիշտ, ինչ որ հեքիաթային բան: «Միթոլոգիա»— դիցաբանություն նաև այն գիտությունն է, որն ուսումնասիրում է հին ժողովուրդների առասպելները, նրանց ծագումն ու նրանց փոխառումը մյուս ժողովուրդների կողմից, և այլն:

Տերիտորիալ ջրեր—ծովափնյա այն շերտը, որը համարվում է տվյալ ափին գտնվող պետության տիրապետությունը: Այդ ծովաշերտում նավարկող բոլոր նավերը պարտավոր են ենթարկվել այդ պետության օրենքներին և իշխանությունների կարգադրություններին կամ, ինչպես ասում են, ենթարկվել նրա իրավասությանը (օրենսդրությանը): Տերիտորիալ ջրաշերտի լայնքը միջազգային կարգով չի սահմանված: Նա ամենից հաճախ կազմում է երեք մղոն (մոտ հինգ կիլոմետր), սակայն հաճախ դանազան պետությունների օրենսդրական կարգադրություններով նա



սահմանվում է և' 12, և' նույնիսկ 20 մղոն:

Օֆիցիոզ— այդպես են կոչվում մամուլի այն օրգանները (թերթերը կամ ժուռնալները,) որոնց խմբագրությունը գտնըվում է կառավարության կամ որևէ կառավարական օրգանի փաստացի ղեկավարության տակ (օրինակ արտաքին գործերի մինիստրության ղեկավարության տակ), ընդ որում այդ ղեկավարության փաստը պաշտոնապես չի ճանաչվում: Այդպիսով, օֆիցիոզը արտահայտում է կառավարական տեսակետը և բոլորն էլ գիտեն, որ նա արտահայտում է հատկապես կառավարության տեսակետը, սակայն միևնույն ժամանակ կառավարությունը ձևական պատասխանատվություն չի կրում դրա համար: Օֆիցիոզների— բնորոշ օրինակներ կարող են ծառայել «Թայմզ» և «Դեյլի Տելեգրաֆ» թերթերն Անգլիայում, «Տանը» Ֆրանսիայում: Այս բոլոր թերթերն էլ մասնավոր ձեռնարկություններ են, սակայն նրանց խմբագրություններն այնքան սերտորեն են կապված Անգլիայի և Ֆրանսիայի կառավարական օրգանների հետ, որ նրանց արտահայտած տեսակետը առանց սխալվելու կարելի յե համարել կառավա-

բական շրջանների կարծիք: Ճիշտ է, լինում են դեպքեր, երբ օրինակ «Թայմզը» և «Դեյլի Տելեգրաֆը» տարբեր տեսակետներ են արտահայտում վորևե հարցի շուրջը: Սակայն այդ տարակարծիքությունը սովորաբար արտահայտում է սոսկ իրեն կառավարության շարքերում գոյություն ունեցող տարակարծիքությունը:



ՀԿ(բ)Կ ԿԿ հրատարակչություն — «[illegible] Հայաստան»

Շարունակվում է 1937 թ.
բաժանորդագրությունը

# „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ“

Լույս է տեսնում ամիսը 2 անգամ

Հ Կ (բ) Կ Կենտկոմի կուսպրոպագանդայի և ագիտացիայի բաժնի հրատարակություն

ԲԱԺՆԵԳԻՆԸ՝

12 ամիսը . . . 6 ռուբ.
6 » . . 3 »
3 » . . 1 ռ. 50 կ.

Առանձին համարը՝ 25 կոպ.

Բաժանորդագրվելու համար դիմել՝ «Սոյուզպեչատ»-ի քաղաքային, շրջանային բյուրոներին և փոստի բաժանմունքներին։